Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 12 (114)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 12 (114)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»

ԵՐԵՎԱՆ—1941



ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀԻ ՏԵՂԱԿԱԼ ԵՎ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐ

# ԸՆԿ. ՄՈԼՈՏՈՎԻ ԵԼՈՒՅԹԸ ՌԱԴԻՈՅՈՎ

## 1941 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆԻՍԻ 22-ԻՆ

Սովետական Միության քաղաքացինե՛ր և քաղաքացուհինե՛ր:

*Սովետական կառավարությունը և նրա ղեկավար ընկեր Ստալինն ինձ հանձնարարել են անել հետևյալ հայտարարությունը․*

*Այսօր, առավոտյան ժամը 4-ին, առանց Սովետական Միությանը որևէ պրետենզիա*

ներկայացնելու, առանց պատերազմ հայտարարելու, գերմանական զորքերը հարձակվեցին մեր երկրի վրա, գրոհեցին մեր սահմանները շատ տեղերում և իրենց ինքնաթիռներից ռմբակոծման ենթարկեցին մեր քաղաքները՝ Ժիտոմիրը, Կիևը, Սևաստոպոլը, Կաունասը և մի քանի այլ քաղաքներ, ըստ որում սպանվել և վիրավորվել է ավելի քան 200 մարդ: Թշնամու ինքնաթիռների հարձակումներ և հրետանային ռմբակոծություն կատարվեցին նաև ռումինական ու ֆինլանդական տերիտորիաներից:

Այս չլսված հարձակումը մեր երկրի վրա, քաղաքակիրթ ժողովուրդների պատմության մեջ անօրինակ մի ուխտադրժություն է: Մեր երկրի վրա հարձակում է կատարվել, չնայած այն բանին, որ ՍՍՌՄ-ի ու Գերմանիայի միջև կնքված է միմյանց վրա չհարձակվելու պայմանագիրը և Սովետական կառավարությունն ամենայն բարեխղճությամբ կատարում էր այդ պայմանագրի բոլոր պայմանները: Մեր երկրի վրա հարձակում է կատարվել չնայած այն բանին, որ այդ պայմանագրի գործողության ամբողջ ժամանակամիջոցում գերմանական կառավարությունը ոչ



մի անգամ չէր կարող ՍՍՌՄ-ին ներկայացնել որևէ պրետենզիա՝ պայմանագրի կատարման վերաբերյալ: Սովետական Միության վրա կատարված այս ավազակային հարձակման ողջ պատասխանատվությունն ամբողջապես ու լիովին ընկնում է գերմանական ֆաշիստական կառավարողների վրա:

Կատարված հարձակումից հետո արդեն, Մոսկվայի գերմանական դեսպան Շուլենբուրգն առավոտյան ժամը 5-ից 30 րոպե անց, ինձ, որպես Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսարի, հայտարարություն արեց իր կառավարության անունից, թե գերմանական կառավարությունը որոշել է պատերազմով հանդես գալ ՍՍՌՄ-ի դեմ, Գերմանիայի արևելյան սահմանի մոտ Կարմիր Բանակի զորամասերի կենտրոնացման կապակցությամբ:

Ի պատասխան դրան ես Սովետական կառավարության անունից հայտարարեցի, որ մինչև վերջին րոպեն գերմանական կառավարությունը որևէ պրետենզիա չէր ներկայացրել Սովետական կառավարությանը, որ Գերմանիան հարձակում է գործել ՍՍՌՄ-ի վրա, չնայած Սովետական Միության խաղաղասիրական դիր-

քին, և որ դրանով իսկ ֆաշիստական Գերմանիան հարձակվող կողմ է հանդիսանում:

Սովետական Միության կառավարության հանձնարարությամբ, ես պետք է նաև հայտարարեմ, որ մեր զորքերը և մեր ավիացիան ոչ մի կետում թույլ չեն տվել սահմանի խախտում, ուստի և այսօր առավոտյան ռումինական ռադիոյի արած այն հայտարարությունը, թե իբր սովետական ավիացիան գնդակոծել է ռումինական օդանավակայանները, լիակատար կեղծիք է ու պրովոկացիա: Նույնպիսի կեղծիք ու պրովոկացիա է Հիտլերի այսօրվա ամբողջ դեկլարացիան, որի մեջ նա փորձում է հետին թվով մեղադրական նյութեր հորինել այն մասին, թե Սովետական Միությունը չի պահպանել սովետա-գերմանական պակտը:

Այժմ, երբ հարձակումը Սովետական Միության վրա արդեն կատարված է, սովետական կառավարությունը մեր զորքերին հրաման է տվել՝ հետ մղել ավազակային հարձակումը և գերմանական զորքերին վռնդել մեր հայրենիքի տերիտորիայից:

Այս պատերազմը մեր վրին է փաթաթել



ո՛չ թե գերմանական ժողովուրդը, ո՛չ թե գերմանական բանվորները, գյուղացիներն ու ինտելիգենցիան, ժողովուրդ, որի տառապանքները մենք լավ ենք հասկանում, այլ Գերմանիայի արյունարբու ֆաշիստական կառավարողների կլիկը, որոնք ստրկացրել են ֆրանսիացիներին, չեխերին, լեհերին, սերբերին, Նորվեգիան, Բելգիան, Դանիան, Հոլլանդիան, Հունաստանը և այլ ժողովուրդների:

Սովետական Միության կառավարությունն անհողդողդ համոզմունք է հայտնում, որ մեր քաջարի բանակն ու նավատորմը և սովետական ավիացիայի խիզախ բազեները պատվով կկատարեն իրենց պարտքը հայրենիքի հանդեպ, սովետական ժողովրդի հանդեպ և կործանիչ հարված կհասցնեն ագրեսորին:

Առաջին անգամը չէ, որ մեր ժողովուրդը ստիպված է լինում գործ ունենալ հարձակվող գոռոզամիտ թշնամու հետ: Ժա-

մանակին Ռուսաստանում Նապոլեոնի կատարած արշավանքին մեր ժողովուրդը պատասխանեց հայրենական պատերազմով և Նապոլեոնը պարտություն կրեց, հասավ իր կրախին: Նույնը կկատարվի նաև գոռոզամիտ Հիտլերի հետ, որը նոր արշավանք է հայտարարել մեր երկրի դեմ: Կարմիր Բանակը և մեր ամբողջ ժողովուրդը նորից հաղթական հայրենական պատերազմ կմղեն հայրենիքի համար, պատվի համար, ազատության համար:

Սովետական Միության կառավարությունը հաստատ համոզմունք է հայտնում, որ մեր երկրի ամբողջ բնակչությունը, բոլոր բանվորները, գյուղացիներն ու ինտելիգենցիան, տղամարդիկ ու կանայք, հարկ եղած գիտակցությամբ կվերաբերվեն իրենց պարտականություններին, իրենց աշխատանքին: Մեր ամբողջ ժողովուրդն այժմ պետք է լինի համախմբված ու միասնական՝ ինչպես երբեք: Մեզանից յուրաքանչյուրը պետք է իրենից և ուրիշներից պահանջի կարգապահություն,



կազմակերպվածություն, անձնազոհություն, ինչպիսին վայել է իսկական սովետական հայրենասերին, ապահովելու համար Կարմիր բանակի, Նավատորմի ու Ավիացիայի բոլոր կարիքները, ապահովելու համար հաղթանակը թշնամու նկատմամբ:

Կառավարությունը կոչ է անում ձեզ, Սովետական Միության քաղաքացինե՛ր և քաղաքացուհինե՛ր, է՛լ ավելի սերտորեն համախմբել ձեր շարքերը մեր պանծալի բոլշևիկյան պարտիայի շուրջը, մեր սովետական կառավարության շուրջը, մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը:

Մեր գործն արդար է: Թշնամին կջախջախվի: Հաղթանակը մերը կլինի:

---

## ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

# ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

## ՍՍՌՄ ԱՌԱՆՁԻՆ ՎԱՅՐԵՐՈՒՄ ՊԱՏԵՐԱԶՄԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՏԱՐԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 49-րդ հոդվածի «հ» կետի հիման վրա պատերազմական դրություն հայտարարել Արխանգելսկի մարզում, Բելոռուսական ՍՍՌ-ում, Վոլոգդայի մարզում, Վորոնեժի մարզում, Իվանովյան մարզում, Կարելո-Ֆիննական ՍՍՌ-ում, Կալինինի մարզում, Կրասնոդարի երկրամասում, Ղրիմի ԱՍՍՌ-ում, Կուրսկի մարզում, Լիտվական ՍՍՌ-ում, Լատվիական ՍՍՌ-ում,*



*Լենինգրադ քաղաքում և Լենինգրադի մարզում, Մոլդավական ՍՍՌ-ում, Մուրմանսկի մարզում, Մոսկվա քաղաքում և Մոսկվայի մարզում, Օրյոլի մարզում, Ռոստովի մարզում, Ռյազանի մարզում, Սմոլենսկի մարզում, Տուլայի մարզում, Ուկրաինական ՍՍՌ-ում, Էստոնական ՍՍՌ-ում և Յարոսլավլի մարզում։*

ՍՍՌ Միության Գերագույն Սովետի
Նախագահության նախագահ՝
Մ. ԿԱԼԻՆԻՆ

ՍՍՌ Միության Գերագույն Սովետի
Նախագահության քարտուղար՝
Ա.. ԳՈՐԿԻՆ

*Մոսկվա, Կրեմլ, 22 հունիսի, 1941 թ.*

---

### ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

# ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

## ՊԱՏԵՐԱԶՄԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՏԱՐԱՐՎԱԾ ՎԱՅՐԵՐՈՒՄ ԵՎ ՊԱՏԵՐԱԶՄԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՇՐՋԱՆՆԵՐՈՒՄ ՌԱԶՄԱԿԱՆ ՏՐԻԲՈՒՆԱԼՆԵՐԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՍՏԱՏԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*1. Հաստատել պատերազմական դրություն հայտարարված վայրերում և պատերազմական գործողությունների շրջաններում ռազմական տրիբունալների կանոնադրությունը։*

*2. Պատերազմական դրություն հայտարարված վայրերում և պատերազմական գործողությունների շրջաններում ռազմական տրիբունալների կողմից գործերի քննության՝ հիշյալ կանոնադրության 11-րդ և*



*12-րդ հոդվածներով նախատեսված կարգը գործի է դրվում ՍՍՌ Միության Արդարադատության ժողովրդական կոմիսարի և ՍՍՌ Միության Պաշտպանության ժողովրդական կոմիսարի համատեղ հրամանով, ՍՍՌ Միության ժողովրդական կոմիսարների Սովետի թույլտվությամբ։*

ՍՍՌ Միության Գերագույն Սովետի Նախագահության նախագահ՝
Մ. ԿԱԼԻՆԻՆ

ՍՍՌ Միության Գերագույն Սովետի Նախագահության քարտուղար՝
Ա. ԳՈՐԿԻՆ

*Մոսկվա, Կրեմլ, 22 հունիսի, 1941 թ.*

---

## ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

# ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ ՊԱՏԵՐԱԶՄԱԿԱՆ ԴՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

1. Պատերազմական դրությունը, ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 49-րդ հոդվածի «հ» կետին համապատասխան, հայտարարվում է առանձին վայրերում կամ ամբողջ ՍՍՌՄ-ում, ելնելով ՍՍՌՄ-ի պաշտպանության շահերից և հասարակական կարգ ու կանոնն ու պետական անվտանգությունն ապահովելու համար:

2. Պատերազմական դրություն հայտարարված վայրերում պետական իշխանության օրգանների բոլոր ֆունկցիաները՝ պաշտպանության, հասարակական կարգ ու կանոնի և պետական անվտանգության ապահովման բնագավառում պատկանում



են ռազմաճակատների, բանակների, զինվորական օկրուգների ռազմական խորհուրդներին, իսկ այնտեղ, որտեղ չկան ռազմական խորհուրդներ՝ զորական միավորումների բարձրագույն հրամանատարությանը:

3. Պատերազմական դրություն հայտարարված վայրերում զինվորական իշխանություններին (2-րդ կետ) իրավունք է տրվում.

ա) գործող օրենքներին և կառավարության որոշումներին համապատասխան, քաղաքացիներին ներգրավել աշխատանքային պարհակի՝ պաշտպանական աշխատանքներ կատարելու, հաղորդակցության ճանապարհների, կառուցվածքների, կապի միջոցների, էլեկտրոկայանների, էլեկտրոցանցերի և այլ կարևորագույն օբեկտների պահպանման համար, հրդեհների, համաճարակների և տարերային աղետների դեմ պայքարելու գործին մասնակցելու համար.

բ) սահմանել ռազմա-բնակարանային պարտականություն՝ զորամասերի և հիմնարկների տեղավորման համար.

գ) հայտարարել աշխատանքային և ավ–

տոգուժային պարհակ՝ ռազմական կարիքների համար·

դ) վերցնել տրանսպորտային միջոցները և պաշտպանության կարիքների համար անհրաժեշտ այլ գույքը, ինչպես պետական, հասարակական և կոոպերատիվ ձեռնարկություններից ու կազմակերպություններից, այնպես էլ առանձին քաղաքացիներից·

ե) կարգավորել հիմնարկների և ձեռնարկությունների, այդ թվում՝ թատրոնների, կինոների ու այլ հաստատությունների աշխատանքի ժամերը, ամեն տեսակ ժողովների, երթերի և այլնի կազմակերպումը· արգելել որոշ ժամանակից հետո փողոցում երևալը, սահմանափակել փողոցային երթևեկությունը, ինչպես նաև անհրաժեշտ դեպքերում կատարել խուզարկություններ ու ձերբակալել կասկածելի անձանց·

զ) կարգավորել առևտուրը և առևտրական կազմակերպությունների (շուկաներ, խանութներ, պահեստներ, հասարակական սննդի ձեռնարկություններ), կոմունալ ձեռնարկությունների (բաղնիքներ, լվացքատներ, վարսավիրանոցներ և այլն) աշ-



խատանքը, ինչպես նաև սահմանել բնակչությանը պարենային ու արդյունաբերական ապրանքներ բաց թողնելու նորմաները·

է) արգելել մուտքն ու ելքը պատերազմական դրություն հայտարարված վայրերում·

ը) պատերազմական դրություն հայտարարված վայրի սահմաններից կամ նրա առանձին կետերից վարչական կարգով արտաքսել այն անձանց, որոնք սոցիալապես վտանգավոր են ճանաչված, ինչպես իրենց հանցավոր գործունեությամբ, այնպես էլ հանցագործ միջավայրի հետ ունեցած կապերով:

4· Այս Հրամանագրի 3-րդ կետով նախատեսված բոլոր հարցերի վերաբերմամբ զինվորական իշխանություններն իրավունք ունեն·

ա) հրատարակել ամբողջ բնակչության համար պարտադիր որոշումներ, այդ որոշումները չկատարելու համար սահմանելով վարչական կարգով պատիժ— մինչև 6 ամիս ժամանակով ազատազրկում կամ տուգանք մինչև 3000 ռուբլի:

բ) կարգադրություններ անել իշխանու-

*թյան տեղական օրգաններին, պետական և հասարակական հիմնարկներին ու կազմակերպություններին և նրանցից պահանջել այդ կարգադրությունների անպայման ու անհապաղ կատարում։*

5. *Պետական իշխանության բոլոր տեղական օրգանները, պետական, հասարակական հիմնարկները, կազմակերպությունները ու ձեռնարկությունները պարտավոր են լիակատար աջակցություն ցույց տալ զինվորական հրամանատարությանը՝ տվյալ վայրի ուժերն ու միջոցները երկրի պաշտպանության կարիքների և հասարակական կարգ ու կանոնն ու անվտանգությունն ապահովելու համար օգտագործելու ասպարեզում։*

6. *Զինվորական իշխանությունների կարգադրություններին ու հրամաններին չենթարկվելու, ինչպես նաև պատերազմական դրություն հայտարարված վայրերում կատարած հանցագործությունների համար հանցավորները ենթակա են քրեական պատասխանատվության՝ պատերազմական ժամանակվա օրենքներով։*

7. *Ի բացառումն դատարանների կողմից քրեական գործերի քննության գործող կա-*



*նոններից, պատերազմական դրություն հայտարարված վայրերում պաշտպանության, հասարակական կարգ ու կանոնի և պետական անվտանգության դեմ ուղղված հանցագործությունների վերաբերյալ բոլոր գործերը հանձնվում են ռազմական տրիբունալների քննությանը, այսինքն.*

*ա) պետական հանցագործությունների վերաբերյալ գործերը.*

*բ) հանրային (սոցիալիստական) սեփականության պահպանության մասին 1932 թվականի օգոստոսի 7-ի օրենքով նախատեսված հանցագործությունների վերաբերյալ գործերը.*

*գ) զինվորական ծառայողների կողմից կատարված հանցագործությունների վերաբերյալ բոլոր գործերը.*

*դ) կողոպուտի վերաբերյալ գործերը (ՌՍՖՍՌ Քրեական Օրենսգրքի 167-րդ հոդված և մյուս միութենական ռեսպուբլիկաների Քրեական Օրենսգրքերի համապատասխան հոդվածներ).*

*ե) դիտավորյալ սպանությունների վերաբերյալ գործերը (ՌՍՖՍՌ Քրեական Օրենսգրքի 136—138 հոդվածներ և մյուս միութենական ռեսպուբլիկաների Քրեական*

Օրենսգրքերի համապատասխան հոդվածներ).

դ) բանտարկության տներից և կալանքի տակից բռնի կերպով ազատելու վերաբերյալ գործերը (ՌՍՖՍՌ Քրեական Օրենսգրքի 81-րդ հոդված և մյուս միութենական ռեսպուբլիկաների Քրեական Օրենսգրքերի համապատասխան հոդվածներ).

է) ընդհանուր զինվորական պարտականության կատարումից խուսափելու վերաբերյալ (ՌՍՖՍՌ Քրեական Օրենսգրքի 68-րդ հոդված ու մյուս միութենական ռեսպուբլիկաների Քրեական Օրենսգրքերի համապատասխան հոդվածներ) և իշխանության ներկայացուցիչներին դիմադրելու վերաբերյալ գործերը (ՌՍՖՍՌ Քրեական Օրենսգրքի 73-րդ, $73^1$ ու $73^2$ հոդվածներ և մյուս միութենական ռեսպուբլիկաների Քրեական Օրենսգրքերի համապատասխան հոդվածներ).

ը) զենքի ապօրինի գնման, վաճառքի ու պահելու, ինչպես նաև զենքի հափշտակման վերաբերյալ գործերը (ՌՍՖՍՌ Քրեական Օրենսգրքի 164ա, 166ա ու



182-րդ հոդվածներ և մյուս միութենական ռեսպուբլիկաների Քրեական Օրենսգրքերի համապատասխան հոդվածներ)։

Բացի դրանից, զինվորական իշխանությունններին իրավունք է տրվում ռազմական տրիբունալների քննությանը հանձնել սպեկուլյացիայի, չարամիտ խուլիգանության և միութենական ռեսպուբլիկաների Քրեական Օրենսգրքերով նախատեսված այլ հանցագործությունների վերաբերյալ գործերը, եթե հրամանատարությունը ռազմական դրության տեսակետից այդ գտնում է անհրաժեշտ։

8. Ռազմական տրիբունալներում գործերի քննությունը կատարվում է «Պատերազմական գործողությունների շրջաններում ռազմական տրիբունալների կանոնադրությամբ» սահմանված կանոններով։

9. Ռազմական տրիբունալների կայացրած դատավճիռները վճռաբեկ բողոքարկման ենթակա չեն և կարող են վերացվել կամ փոփոխվել միայն վերահսկման կարգով։

10. *Այս Հրամանագիրը տարածվում է նաև այն վայրերի վրա, որտեղ արտակարգ հանգամանքների հետևանքով չկան պետական իշխանության և ՍՍՌՄ պետական կառավարման տեղական օրգաններ։*

ՍՍՌ Միության Գերագույն Սովետի
Նախագահության նախագահ՝
Մ. ԿԱԼԻՆԻՆ

ՍՍՌ Միության Գերագույն Սովետի
Նախագահության քարտուղար՝
Ա. ԳՈՐԿԻՆ

*Մոսկվա, Կրեմլ, 22 հունիսի, 1941 թ.*

---



## ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

# ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

## ՊԱՏԵՐԱԶՄԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿ ՇԱՐՔԱՅԻՆ ԵՎ ԿՐՏՍԵՐ ՊԵՏԿԱԶՄԻ ԶԻՆՎՈՐԱԿԱՆ ԾԱՌԱՅՈՂՆԵՐԻ ԸՆՏԱՆԻՔՆԵՐԻՆ ՆՊԱՍՏ ՆՇԱՆԱԿԵԼՈՒ ԵՎ ՏԱԼՈՒ ԿԱՐԳԻ ՄԱՍԻՆ

*Մոբիլիզացիայով Կարմիր բանակ, Ռազմա-Ծովային նավատորմ, Ներքին Գործերի ժողկոմատի սահմանապահ ու ներքին զորամասերը կանչված շարքային և կրտսեր պետ-կազմի զինվորական ծառայողների ընտանիքները, բացառությամբ գերակետիկ ծառայողների ընտանիքների, պատերազմական ժամանակ նպաստ են ստանում պետությունից հետևյալ կարգով՝*

1. *Եթե ընտանիքում աշխատունակներ*

10. *Այս Հրամանագիրը տարածվում է նաև այն վայրերի վրա, որտեղ արտակարգ հանգամանքների հետևանքով չկան պետական իշխանության և ՍՍՌՄ պետական կառավարման տեղական օրգաններ:*

ՍՍՌ Միության Գերագույն Սովետի
Նախագահության նախագահ՝
Մ. ԿԱԼԻՆԻՆ

ՍՍՌ Միության Գերագույն Սովետի
Նախագահության քարտուղար՝
Ա. ԳՈՐԿԻՆ

*Մոսկվա, Կրեմլ, 22 հունիսի, 1941 թ.*

---



ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

# ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

## ՊԱՏԵՐԱԶՄԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿ ՇԱՐՔԱՅԻՆ ԵՎ ԿՐՏՍԵՐ ՊԵՏԿԱԶՄԻ ԶԻՆՎՈՐԱԿԱՆ ԾԱՌԱՅՈՂՆԵՐԻ ԸՆՏԱՆԻՔՆԵՐԻՆ ՆՊԱՍՏ ՆՇԱՆԱԿԵԼՈՒ ԵՎ ՏԱԼՈՒ ԿԱՐԳԻ ՄԱՍԻՆ

*Մոբիլիզացիայով Կարմիր բանակ, Ռազմա-Ծովային նավատորմ, Ներքին Գործերի Ժողկոմատի սահմանապահ ու ներքին զորամասերը կանչված շարքային և կրտսեր պետ-կազմի զինվորական ծառայողների ընտանիքները, բացառությամբ գերակետիկ ծառայողների ընտանիքների, պատերազմական ժամանակ նպաստ են ստանում պետությունից հետևյալ կարգով՝*

*1. Եթե ընտանիքում աշխատունակներ*

չկան, նպաստը տրվում է ամսական հետևյալ չափերով.

ա) մեկ անաշխատունակ լինելու դեպքում 100 ռուբլի, բ) երկու անաշխատունակ լինելու դեպքում՝ 150 ռուբլի, գ) երեք և ավելի անաշխատունակ լինելու դեպքում՝ 200 ռուբլի ամսական՝ քաղաքում և այդ գումարի 50 տոկոսը գյուղական վայրերում։

2. Եթե ընտանիքում կա երեք և ավելի անաշխատունակ ու մեկ աշխատունակ, նպաստը տրվում է ամսական 150 ռուբլու չափով քաղաքում և այդ գումարի 50 տոկոսը գյուղական վայրերում։

3. Եթե ընտանիքում կա 16 տարեկանից ցածր երկու երեխա և մեկ աշխատունակ, նպաստը տրվում է ամսական 100 ռուբլու չափով քաղաքում և այդ գումարի 50 տոկոսը գյուղական վայրերում։

4. Նպաստը նշանակում է ըստ զինվորական ծառայողի ընտանիքի բնակավայրի՝ աշխատավորության դեպուտատների շրջանային (քաղաքային) Սովետի Գործկոմին կից հանձնաժողովը՝ հետևյալ կազմով.

Հանձնաժողովի նախագահ՝ շրջանային (քաղաքային) Գործկոմի նախագահի տեղակալ։



Հանձնաժողովի անդամներ՝

1) Շրջանային (քաղաքային) զինվորական կոմիսար։

2) Սոցիալիստական ապահովագրության շրջանային (քաղաքային) բաժնի վարիչ։

5. Նպաստ նշանակելու հարցերը լուծվում են երեք օրվա ընթացքում՝ քաղաքում ապրող զինվորական ծառայողների ընտանիքներից դիմում ստանալուց և գյուղական վայրերում ապրող զինվորական ծառայողների ընտանիքների ցուցակները գյուղական սովետներից ստանալուց հետո։

6. Զինվորական ծառայողի ընտանիքի նպաստ նշանակելու հարցը լուծելիս՝ նրա խնամքի տակ գտնվող անաշխատունակ են համարվում՝

ա) 16 տարեկանից փոքր երեխաները և 18 տարեկանից փոքր աշակերտները.

բ) 16 տարեկանից փոքր եղբայրները և քույրերը, իսկ սովորողները՝ 18 տարեկանից փոքր, եթե նրանք չունեն աշխատունակ ծնողներ.

գ) Վաթսուն տարեկանից բարձր հայրը և 55 տարեկանից բարձր մայրը.

դ) Առաջին ու երկրորդ խմբի հաշմանդամ կինը և ծնողները՝ անկախ տարիքից։

**Ծանոթություն.— 1.** Ներկա հոդվածում հիշատակված անձնավորությունները համարվում են զինվորական ծառայողի խնամքի տակ, եթե նրանց ապրուստի մշտական և հիմնական աղբյուրը հանդիսանում էր զինվորական ծառայողի կողմից ցույց տրվող օգնությունը։

**Ծանոթություն.— 2.** Զինվորական ծառայողի ընտանիքի այն անդամները, որոնք ապրում են նրա ընտանիքից առանձին՝ այլ վայրում (քաղաքում, շրջանում), նպաստ ստանում են ընտանիքի նշանակված նպաստի ընդհանուր գումարի համապատասխան չափով։

7. Մոբիլիզացիայի ենթարկված բանվորների ու ծառայողների ընտանիքներին նպաստ նշանակվում է այն օրվանից, որ օրվանից որ նրանց հաշիվները ամբողջապես փակված են աշխատանքի վայրում. կոլտնտեսականների և մնացած մոբիլիզացիայի ենթարկվածների ընտանիքներին նպաստ նշանակվում է զորակոչի օրվանից, իսկ մոբիլիզացիայի մոմենտին իսկական զինվորական ծառայության մեջ գտնվող զինվորական ծառայողների ընտանիքներին



նպաստ նշանակվում է մոբիլիզացիայի հայտարարման մոմենտից։

8. Նպաստ նշանակող հանձնաժողովի որոշման դեմ կարելի է գանգատվել մարզային (երկրամասային) Գործադիր Կոմիտեներին և մարզային բաժանում չունեցող Ռեսպուբլիկայի ժողկոմսովետին, որոնց որոշումը կայացվում է երեք օրվա ընթացքում և վերջնական է։

9. Հաշմանդամության պատճառով զինվորական ծառայողին զինվորական ծառայությունից ազատելու դեպքում նրա ընտանիքին նշանակված նպաստը տրվում է նրան մինչև հաշմանդամության թոշակ նշանակելը։

Սպանված, մեռած կամ անհետ կորած զինվորական ծառայողների ընտանիքները շարունակում են ստանալ նրանց համար սահմանված նպաստը մինչև թոշակ նշանակելը։

10. Եթե նպաստ ստանալու իրավունք չունեցող զինվորական ծառայողի ընտանիքի կազմի մեջ հետագայում փոփոխություն է առաջանում (ընտանիքի մյուս անդամների մոբիլիզացիա, ընտանիքի անաշխատունակ նոր անդամների երեվան գալը և այլն), որի հետեվանքով ընտանիքը իրա-

վունք է ձեռք բերում նպաստ ստանալու, ապա այդ ընտանիքին Ներկա Հրամանագրով նախատեսված կարգով նպաստ է նշանակվում փոփոխություն տեղի ունենալու մոմենտից։

Եթե նպաստ ստացող զինվորական ծառայողի ընտանիքի կազմի մեջ հետագայում այնպիսի փոփոխություն է առաջանում, որն այդ ընտանիքին զրկում է նպաստ ստանալու իրավունքից (ընտանիքի անչափահաս անդամների չափահաս դառնալը, ընտանիքի աշխատունակ նոր անդամների երևան գալը և այլն), ապա այդ ընտանիքը նպաստ ստանալու իրավունքը կորցնում է ընտանիքի կազմի մեջ փոփոխություն առաջանալու մոմենտից։

ՍՍՌ Միության Գերագույն Սովետի
Նախագահության նախագահ՝
Մ. ԿԱԼԻՆԻՆ

ՍՍՌ Միության Գերագույն Սովետի
Նախագահության քարտուղար՝
Ա. ԳՈՐԿԻՆ

*Մոսկվա, Կրեմլ, 1941 թ. հունիսի 26.*

---



## ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

# ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

## ՊԱՏԵՐԱԶՄԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ԵՎ ԾԱՌԱՅՈՂՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԺԱՄԱՆԱԿԻ ՌԵԺԻՄԻ ՄԱՍԻՆ

Պատերազմական ժամանակվա կարիքների հետ կապված արտադրական առաջադրանքների կատարումն ապահովելու նպատակով ՍՍՌ Միության Գերագույն Սովետի նախագահությունը որոշում է.

1. Արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության և առևտրի ձեռնարկությունների դիրեկտորներին իրավունք տալ ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետի թույլտվությամբ, ինչպես ձեռնարկության բոլոր բանվորների ու ծա-

ռայողների, նույնպես և առանձին ցեխերի, աշխատամասերի և բանվորների ու ծառայողների առանձին խմբերի համար պարտադիր արտաժամյա աշխատանքներ սահմանելու օրական մեկ ժամից մինչև 3 ժամ տևողությամբ.

2. 16 տարեկանից ցածր անձնավորությունները կարող են պարտադիր արտաժամյա աշխատանքի մեջ ներգրավվել օրական 2 ժամից ոչ ավելի տևողությամբ։

3. Պարտադիր արտաժամյա աշխատանքի մեջ չեն կարող ներգրավվել հղի կանայք՝ հղիության 6-րդ ամսից սկսած, ինչպես նաև երեխային կրծքով կերակրող կանայք՝ կերակրման 6 ամսվա ընթացքում։

4. Բանվորների և ծառայողների պարտադիր արտաժամյա աշխատանքների վճարումը կատարել մեկ ու կես չափով։

5. Վերացնել հերթական և լրացուցիչ արձակուրդները բոլոր պետական, կոոպերատիվ և հասարակական ձեռնարկություններում ու հիմնարկություններում, այդ արձակուրդները փոխարինելով չօգտագործված



արձակուրդի համար տրվող դրամական կոմպենսացիայով։ Արձակուրդ տալ միայն հիվանդության դեպքում։ Հղիության և ծննդաբերության արձակուրդները տալ ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետի, ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի և ՀԱՄԿԽ-ի 1938 թվականի դեկտեմբերի 28-ի որոշման 14-րդ հոդվածին համապատասխան։

ՍՍՌ Միության Գերագույն Սովետի
Նախագահության նախագահ՝
Մ. ԿԱԼԻՆԻՆ

ՍՍՌ Միության Գերագույն Սովետի
Նախագահության քարտուղար՝
Ա. ԳՈՐԿԻՆ

Մոսկվա, Կրեմլ, 1941 թ. հունիսի 26.

ԵՄ. ՅԱՐՈՍԼԱՎՍԿԻ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԸ

## I. ՄԵՐ ԳՈՐԾՆ ԱՐԴԱՐ Է

1941 *թվականի հունիսի 22-ի օրը պատմության մեջ կմտնի իբրև ֆաշիստական Գերմանիայի դեմ սովետական ժողովրդի հայրենական մեծ պատերազմի սկիզբը, Գերմանիայի, որն ավազակային հարձակում գործեց Սովետական Միության վրա: Երկու հարյուր միլիոնանոց սովետական ժողովուրդը մեկ մարդու պես կանգ է ելնում մեր հայրենի տունը ներխուժած ավազակների դեմ: Անհամար թշնամիների դեմ մղած պայքարում ՍՍՌՄ-ի ժողովուրդներն ստեղծեցին իրենց ազատ ու հզոր հայրենիքը: Հերոսական պայքարով և*



*համառ աշխատանքով են նրանք նվաճել այդ հայրենիքը, պաշտպանելով այն իրենց կրծքով: Առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի արյան ու ցեխի միջից, քաղաքացիական պատերազմի անասելի փլուզման միջից սովետական մարդիկ չտեսնված բարձրության հասցրին իրենց հայրենիքը, անցյալում հետամնաց երկիրը նրանք դարձրին հզոր ու առաջավոր երկիր: Այդ պայքարը ղեկավարեց Լենին-Ստալինի մեծ պարտիան:*

*Ռուս ժողովրդի և ՍՍՌՄ-ի մյուս ժողովուրդների պատմությունը գիտե պայքարի մեջ հերոսության, անձնազոհության, կայունության շլացուցիչ օրինակներ և՛ հեռավոր անցյալ դարերում, և՛ մեր օրերին: Բոլորը գիտեն, թե ռուսներն ինչպես խիզախորեն էին կռվում Սառցային ջարդի ժամանակ,* 1242 *թվականի ապրիլի* 5*-ին, երբ ջախջախվեցին Լիվոնյան օրդենի «շուն-ասպետները»— այսօրվա ֆաշիստների հեռավոր նախորդները, թե ինչպես, Մարքսի խոսքերով ասած, այդ «գարշելիները» դուրս շպրտվեցին, վռնդվեցին ռուսական հողից:*

*Ռուս ժողովրդի պատմությունը գիտե հայրենական պատերազմներ, երբ ժողո-*

վուրդը մեծ ավյունով ջնջում էր թշնամական բանակները, որոնց ղեկավարները համաշխարհային տիրապետության հավակնություն էին ցուցաբերում: 1812 թվականին ռուս ժողովուրդը ջախջախեց զորավարներից մեծագույնին՝ Նապոլեոնին, ստիպելով նրան ջախջախված բանակի խղճուկ մնացորդներով փախչել Ռուսաստանից: Ամբողջ ժողովուրդն այն ժամանակ ոտքի ելավ թշնամու դեմ: Գյուղացիներն ու դեղջկուհիները զինվեցին, որպեսզի դուրս վռնդեն կեղեքիչներին: Եվ այն բանակը, որն անցել էր ամբողջ Եվրոպայով, իր տիրապետությունն էր հաստատում Սիրիայում, Եգիպտոսում, Միջերկրական ծովում,— այդ բանակը ջախջախվեց մարտերում ռուս պանծալի զորավարներ Կուտուզովի, Բագրատիոնի և ուրիշների կողմից: Նա ջախջախվեց հայրենական պատերազմում, որին մասնակցում էին միլիոնավոր գյուղացիներ:

Մեզանից ոչ ոք չի՛ մոռացել և չի՛ մոռանա գերմանական իմպերիալիստների գազանությունները և ծաղր ու ծանակը ժողովրդի նկատմամբ՝ ինտերվենցիայի ժամանակաշրջանում, երբ գերմանական զորքերն օկուպացիայի ենթարկեցին Ուկ-



րաինան, Բելոռուսիան և մյուս երկրամասերն ու մարզերը, որտեղից նրանց դուրս վռնդեցին զինված ժողովուրդն ու Կարմիր բանակը:

Մենք պետք է անենք ամեն բան, ինչ մեզանից պահանջում է պատմական իրադրությունը, ամեն բան, ինչ պահանջում է մեր հայրենիքի հանդեպ, ամբողջ աշխարհի աշխատավորության հանդեպ ունեցած մեր պարտքը, որպեսզի ֆաշիստների այդ ավազակային հարձակումը ոչ միայն հանդիպի արժանի հակահարվածի, այլև հասցնի նրանց լիակատար ջախջախմանը:

Սովետական կառավարությունն իր ուժերի և հնարավորությունների սահմաններում արեց ամեն բան, պատերազմը կանխելու համար: Այն ժամանակ, երբ պատերազմն ընդգրկել էր արդեն աշխարհի կեսը, սովետական կառավարությունն անում էր ամեն բան, որպեսզի խաղաղություն պահպաներ: ՍՍՌՄ-ի ու Գերմանիայի միջև կնքված պայմանագրի բոլոր պայմանները սովետական կառավարությունը պահպանում և կատարում էր լիակատար բարեխղճությամբ: Բայց միևնույն ժամանակ, նա ուշադիր հետևում էր գերմանական ֆաշիստական կառավարության

բոլոր կասկածելի պատրաստությունների ու քայլերին, մի կառավարություն, որը Հիտլերի բերանով հայտարարեց, թե պատերազմի նպատակը Գերմանիան համարում է ֆաշիզմի հեղեմոնիայի հաստատումը Եվրոպայում, և Եվրոպայի բոլոր պետություններից ու ժողովուրդներից պահանջում է ճանաչել ֆաշիստական «նոր կարգը»: Իսկ այդ «նոր կարգը», ինչպես հայտնի է, արտահայտվում է բանվոր դասակարգի, ամբողջ երկրների ու ժողովուրդների աշխատավոր մասսաների անասելի գազանային հետապնդումների ու ստրկացման մեջ, էլ չենք խոսում այն մասին, որ ինքը Գերմանիան վերածված է մի ընդհանուր համակենտրոնացման ճամբարի: Գերմանիայի արյունարբու ֆաշիստական կառավարողները, որոնք ստրկացրել են ֆրանսիացիներին, չեխերին, լեհերին, սերբերին, Նորվեգիան, Բելգիան, Դանիան, Հոլլանդիան, Հունաստանը և այլ ժողովուրդների, ավազակային հարձակում գործեցին մեր հայրենիքի վրա: Սովետական ժողովուրդը չի՛ կարող թույլ տալ և թույլ չի՛ տա, որ գերմանական ֆաշիստի դարշապարը ոտնակոխ անի մեր



սրբազան սովետական հողը, որը ժողովուրդը նվաճել է շահագործողների դեմ, ցարի, կալվածատերերի ու կապիտալիստների դեմ մղված պայքարում, հող, որը ողողված է ժողովրդի քրտինքով ու արյամբ:

Գերմանիան սովետական ժողովրդի դեմ ուղղված այդ պատերազմի մեջ է ներգրավում Ֆինլանդիային և Ռումինիային: Ֆիննական սպիտակգվարդիականները, Գերմանիայի ֆաշիստական դահիճների և ռումինական բոյարների հետ միասին, ուզում են ստրկացնել մեր սրբազան սովետական հողը: Վա՜յ նրանց. որովհետև անխուսափելի, հուժկու ավյունով ոտքի ելած Սովետական Միության 200 միլիոնանոց ժողովուրդը երկրի երեսից կջնջի այդ դահիճներին, մինչև վերջը կջախջախի ֆաշիստական վարակի այդ օջախները, որպեսզի ապահովի խաղաղությունը ժողովուրդների համար և նրանց ինքնուրույն գոյության հնարավորությունը:

Քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանում սովետական ժողովուրդը հայրենական պատերազմ էր մղում ինտերվենտների դեմ, որոնք ուզում էին երկրի

երեսից ջնջել մեր պետությունը: Այժմ մենք կրկին մղում ենք հայրենական նոր, մեծ պատերազմ: Բայց այն ժամանակ, 1918 թվականին մենք թույլ էինք, մենք չունեինք փորձ, մենք նոր էինք միայն ստեղծում Կարմիր բանակը: Իսկ այժմ սովետական հզոր պետությունը կանգնած է կազմ ու պատրաստ, կուտակելով վիթխարի հզորություն ու փորձ, ստեղծելով ՍՍՌՄ-ի ժողովուրդների մեծ բարեկամությունը: Եվ այս հայրենական պատերազմը կմղի մի ժողովուրդ, որը գիտե, որ իր գործն արդար գործ է:

## II. ՄԵՆՔ ՊԱՇՏՊԱՆԵԼՈՒ ԲԱՆ ՈՒՆԵՆՔ

ՍՍՌՄ-ի թշնամիներն ապարդյուն կերպով փորձում էին արյամբ, հրով ու սրով, տնտեսական բլոկադայի միջոցով, պրովոկացիոն հարձակումներով, զրպարտությամբ ու կեղծիքով ոչնչացնել երիտասարդ Սովետական ռեսպուբլիկան:

Քաղաքացիական պատերազմի պաֆոսն արտացոլեց սովետական ժողովրդի մեծ ուժը, ժողովուրդ, որը գիտակցել էր ամեն տեսակ զոհողությունների դիմելու անհրաժեշտությունն իր ազատությունը, իր



հայրենիքը պաշտպանելու համար: Երբ վերընթերցում ենք քաղաքացիական պատերազմի պատմության էջերը, մեր աչքերով անցնում են օտարերկրյա ինտերվենտների դեմ, սպիտակ գվարդիական գեներալների դեմ մղված պատերազմի բազմաթիվ, հաճախ անանուն հերոսների կերպարները: Մեր աչքերով անցնում են Պերեկոպի հերոսները, պանական Լեհաստանի դեմ մղված պատերազմի հերոսները, քաղաքացիական պատերազմի պանծալի զորավարների, իրենց կյանքն աշխատավորության գործի համար զոհաբերած Չապաևի, Շչորսի, Լազոյի, Պարխոմենկոյի և շատ ու շատ ուրիշների կերպարները: Եվ մեր սրտերը լցվում են հպարտությամբ մեր սովետական հայրենիքի համար, մեր ռևոլյուցիայի համար, մեր բոլշևիկյան պարտիայի համար, հերոսական սովետական ժողովրդի համար, որը դաստիարակել է այդպիսի պանծալի, քաջարի զավակներ: Քաղաքացիական պատերազմը ստեղծեց մարդկության պատմության մեջ չտեսնված մասսայական հերոսություն, դաստիարակեց միլիոնավոր հայրենասերներ, որոնք աշխատավորների հայրենիքի պաշտպանության գործում ցուցաբերեցին

անօրինակ անձնվիրություն: Այն ժամանակ պայմանները շատ ծանր էին: Բայց ցրտի ու սովի մեջ, մեծագույն կարիքի մեջ Սովետների Երկիրը, Լենինի և Ստալինի ղեկավարությամբ, իր մեջ գտավ ուժեր՝ կոնտրռևոլյուցիան ճզմելու, ինտերվենտներին դուրս շպրտելու համար:

Միլիոնավոր աշխատավորները գիտեն, թե ինչպիսի հետամնացություն, ինչպիսի նահապետականություն է հաղթահարել սովետական իշխանությունը և, նրանք իրավամբ հպարտանում են նրա մեծագույն հաջողություններով: Ստալինյան հնգամյակները մեր երկիրը դարձրին ամենաառաջավոր, հզոր սոցիալիստական տերություն: Սովետական հայրենասերը սիրում է իր հայրենիքը, որովհետև ՍՍՌՄ-ն աշխարհում միակ երկիրն է, որտեղ արմատախիլ է արված մարդու շահագործումը մարդու կողմից, որտեղ աշխատավոր մասսաներն ազատագրված են շահագործման լծից:

«Ներկայիս սովետական հասարակության առանձնահատկությունը, ի տարբերություն ամեն մի կապիտալիստական հասարակությունից, այն է, որ նրանում չկան այլևս անտագոնիստական, թշնամի դասակարգեր, շահագործող դասակարգերը լիկ-



վիդացիայի են ենթարկված, իսկ բանվորները, գյուղացիները և ինտելիգենցիան, որոնք կազմում են սովետական հասարակությունը, ապրում և աշխատում են բարեկամական համագործակցության սկզբունքներով: Մինչդեռ կապիտալիստական հասարակությունը տակնուվրա է լինում բանվորների և կապիտալիստների միջև, գյուղացիների և կալվածատերերի միջև եղած անհաշտելի հակասություններից, որը դեպի նրա ներքին դրության անկայունությունն է տանում, սովետական հասարակությունը, որն ազատագրված է շահագործման լծից, չգիտե այդպիսի հակասություններ, ազատ է դասակարգային ընդհարումներից և ներկայացնում է բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի բարեկամական համագործակցության պատկեր: Այդ ընդհանրության հիման վրա էլ հենց ծավալվեցին այնպիսի շարժիչ ուժեր, ինչպես սովետական հասարակության բարոյական-քաղաքական միասնությունը, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը, սովետական հայրենասիրությունը»: (Ստալին):

Ինչպե՞ս հապա սովետական ժողովուրդը չսիրի այս երկիրը, որը նա ստեղծել է

հիմքից, որը նա նվաճել է շահագործողներից, պարազիտներից։ Ինչպե՞ս հապա ժողովուրդը չսիրի և իր ամբողջ ուժով չպաշտպանի Սովետների Երկիրը, որը ժողովուրդն ինքն է պաշտպանել իր կրծքով, իր զավակների արյամբ։ Ինչպե՞ս չսիրի սովետական ժողովուրդն այս երկիրը, որտեղ մարդկության պատմության մեջ առաջին անգամ նա, իբրև տեր ու տնօրեն, կարող է ստեղծել նոր, սքանչելի, հրճվալից կյանք, երբ նրա ձեռքերով, նրա աշխատանքով իրականացվում են մարդկության լավագույն մարտիկների մեծ իղձերն ու հույսերը, ամբողջ աշխարհի միլիոնավոր աշխատավորների ամենանվիրական իղձերն ու հույսերը։

Սովետական հայրենասիրության լավագույն արտահայտությունն են հանդիսանում ընկեր Ստալինի խոսքերը. «Եթե բանվոր դասակարգի բարձրացման և այդ դասակարգի սոցիալիստական պետության ամրապնդման համար իմ կատարած աշխատանքի մեջ ամեն մի քայլ ուղղված չլիներ դեպի այն, որ ամրացնենք ու բարելավենք բանվոր դասակարգի դրությունը, ապա ես իմ կյանքն աննպատակ կհամարեի»։



Հենց այն պատճառով, որ սովետական պետության մեջ աճել են միլիոնավոր մարդիկ, որոնց համար ժողովրդի բարօրությունը, նրա նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացումը, հայրենիքի պաշտպանությունը նրանց կյանքի հարազատ գործն է, հենց այդ պատճառով էլ քառորդ դարի ընթացքում այսպես անչափ աճեց մեր հայրենիքը։ Ահա՛ թե որտեղից է գալիս ՍՍՌՄ-ի սոցիալիստական շինարարության՝ աշխարհում չտեսնված պաֆոսը, ահա թե ինչու ամենուրեք— սովետական ինդուստրիայի շինարարություններում ու գործարաններում, որոնք ամրապնդում են մեր հայրենիքի հզորությունը, կոլխոզային դաշտերում ու լաբորատորիաներում, և՛ օդային թռիչքների մեջ, և՛ Արկտիկայի բևեռային լռության մեջ, և՛ առօրյա ամեն մի աշխատանքում սովետական ժողովրդի զավակներն ու դուստրերը ցուցաբերում են և կցուցաբերեն նույնպիսի մասսայական հերոսություն, ինչպիսին ցուցաբերում են նրանց զավակները, հայրերն ու եղբայրները ռազմաճակատում, ցամաքի վրա, օդում, ծովերի վրա և ջրի տակ։ Այն ուժը, որը մեծ ժողովրդին մղում է դեպի վիթխարի ջրանցք-

ների կառուցումը, ճահիճների ցամաքեցումը, ժողովրդական տնտեսության զարգացումը, այդ ուժն իրեն ցույց կտա թշնամու դեմ մղվող կռվում: Յուրաքանչյուր սովետական քաղաքացի գիտե, որ քառորդ դարի ընթացքում սովետների երկիրը լայնորեն զարգացրել է իր անսահման ուժերը: Ահա՛ թե ինչու թշնամուն, որը համարձակվեց ձեռք բարձրացնել մեր սրբազան հողի վրա, թշնամուն, որը փորձում է խանգարել մեզ մեր մեծ շինարարության գործում, մենք կպատասխանենք բոլորս մեկ մարդու պես, որովհետև մենք բոլորս սովետական մարդիկ ենք, մեր հայրենիքի հայրենասերները:

Մենք պաշտպանելու բան ունե՛նք: Եվ չկա աշխարհի մի ուժ, որը կարողանա մեզ ստիպել նահանջելու այն ուղուց, որ նշել է Լենին-Ստալինի մեծ պարտիան, նշել է մեզ համար Սովետական կառավարությունը: Եկել է ժամանակը, երբ մեր բարոյական-քաղաքական միասնությունը կդառնի առավել լիակատար, վառ, արժանավայել արտահայտություն. սովետական կառավարության հրամանը՝ «ետ մղել ավազակային հարձակումը և գերմանական զորքերին վռնդել մեր հայրենիքի տերիտորիա-



յից», — մենք կկատարենք այնպես, ինչպես կատարել ենք բոլշևիկյան պարտիայի ու սովետական կառավարության բոլոր մարտական որոշումները: Եվ թշնամին շատ շուտով կհամոզվի, որ մենք կարող ենք կործանիչ հարվածներ հասցնել լկտի զավթիչներին, որովհետև մեր 200 միլիոնանոց ժողովուրդը լավ գիտե, թե ինչի համար է ինքը պայքարում:

## III. ՈՐՆ Է ՄԵՐ ՈՒԺԸ

Մեր երկրում ապահովված է ամբողջ սովետական հասարակության չտեսնված բարոյական-քաղաքական միասնությունը: Պետության սովետական սիստեմը հիմնըված է աշխատավորներին շահագործողների լծից ազատագրելու վրա, այն հիմնված է ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների իրավահավասարության և եղբայրական բարեկամության վրա: Սովետական հայրենասերը հպարտանում է նրանով, որ ինքը մարդու կողմից մարդու շահագործման անհաշտ թշնամին է, ժողովուրդների անիրավահավասարության թշնամին, ֆաշիստական մեռած, մարդատյաց թեորիաների թշնա-

մին, ռասսայական և ազգային անհավասարության ու կեղեքման թշնամին։ Մեր ուժը մեր ֆաբրիկաների ու գործարանների մեջ է, մեր կոլխոզային կարգերի մեջ. մեր ուժը սովետական կուլտուրայի մեջ է, սովետական գիտության մեջ։ Սովետական հայրենասիրությունը՝ նոր պետության նկատմամբ ժողովրդի սիրո արտահայտությունն է, պետություն, որը միլիոնավոր մարդկանց բարձրացրեց չքավորության վիճակից, նրանց կյանքը լցրեց սքանչելի, նոր բովանդակությամբ, բաց արեց այսպիսի վառ, այսպիսի անծայրածիր հորիզոններ, իմաստավորեց նախորդ բոլոր սերունդների պայքարը և ցույց տվեց, որ իզուր չեն եղել ջանքերը, տառապանքները, զոհերը, թափված արյունը։

«Հաճելի ու բերկրալի է գիտենալ,— ասաց ընկեր Ստալինը Սովետների Համամիութենական Արտակարգ 8-րդ Համագումարում,— որ մեր մարդկանց առատորեն թափած արյունն ապարդյուն չի անցել, որ այդ արյունն իր արդյունքներն է տվել։ Այդ հոգեպես զինում է մեր բանվոր դասակարգին, մեր գյուղացիությանը, մեր աշխատավոր ինտելիգենցիային։ Այդ առաջ է շարժում և բարձրացնում է օրինա-



կան հպարտության զգացմունքը»։

Իրենց ուժերի նկատմամբ այս վստահության, սովետական ջերմ հայրենասիրության, դեպի իրենց հայրենիքն ունեցած սիրո պայմաններում աճում են սովետական հիանալի կադրեր, աճում են նոր գիտության մարդիկ, որոնք գծում են նոր ուղիներ, փշրում են հին նորմաները, աճում են փառաբանված օդաչուներ, հիանալի թռիչքների հերոսներ։ Նրանք, սովետական ավիացիայի այդ բազեները, դեռ ցույց կտան իրենց։ Աճել են հայրենիքի բարգավաճման համար աշխատանքային ճակատում պայքարող անվեհեր մարտիկները՝ ստախանովականները։ Նրանք է՛լ ավելի կծավալեն իրենց ակտիվությունը, է՛լ ավելի կբարձրացնեն աշխատանքի արտադրողականությունը ձեռնարկություններում, կոլխոզներում և սովխոզներում, է՛լ ավելի լավ կկազմակերպեն աշխատանքը յուրաքանչյուր տեղամասում։ Բանվորները՝ գործարաններում, կոլխոզնիկները՝ դաշտերում քննարկելով ընկեր Մոլոտովի ելույթը, պարտավորություն են ստանձնում կրկնակի չափով ավելացնել արտադրանքը։ Եվ մենք չենք տարակուսում, որ նրանք այդ պարտավորությունը

կկատարեն, որ սովետական ժողովուրդը ցույց կտա, թե ինքն ինչպիսի ուժ կարող է ծավալել, երբ խոսքը վերաբերում է նրա կենսական շահերին:

«Հիշեցեք,— ասում էր Ֆրիդրիխ Էնգելսը դեռ 1845 թվականին,— թե ինչպիսի հրաշքներ էր գործում ռեվոլյուցիոն բանակների էնտուզիազմը 1792-ից մինչև 1799 թվականը, բանակներ, որոնք պայքարում էին միայն իլյուզիայի համար, կարծեցյալ հայրենիքի համար, և դուք կհասկանաք, թե որքան ուժեղ պետք է լինի այն բանակը, որը պայքարում է ոչ թե իլյուզիայի, այլ ռեալ իրականության համար»:

ՍՍՌՄ-ի Կարմիր բանակը պայքարում է ոչ թե իլյուզիայի համար, ոչ թե կարծեցյալ հայրենիքի համար, այլ իր ջերմորեն սիրելի, փառքով օծված սովետական հայրենիքի համար, որը ստեղծվել, նվաճվել է հերոսական ջանքերով, ամբողջ սովետական ժողովրդի պայքարով:

«Այդպիսի ընկերության անդամը պատերազմի դեպքում,— ասում էր Էնգելսը,— ... պետք է պաշտպանի իսկական հայրենիքը, իսկական օջախը... Նա, հետևա-



պես, կպայքարի ոգևորությամբ, կայուն կերպով, խիզախորեն, որոնց առաջ պետք է հարդի պես ցրիվ գա ժամանակակից բանակի մեխանիկական վարժեցումը»: (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հատ. III, էջ 278):

Եկել է այն օրը, երբ սովետական հայրենասերների զգացմունքներն ու եռանդը կմարմնավորվեն իբրև բոլոր արգելքները փշրող մի հեղեղատ, երբ պատերազմը յուրաքանչյուր քայլափոխում կծնի մասսայական հերոսություն, սովետական մարդկանց պատրաստակամություն՝ դիմելու ամեն տեսակ զոհողությունների, հաղթահարելու ամեն տեսակ խոչընդոտներ, հայրենի երկիրը պաշտպանելու, նրան անընդհատ աճման հնարավորություն տալու համար, որովհետև

«...Հողը,
Որ դու
Նվաճել ես
Եվ կիսակենդան
Տըվել խընամք,
Ուր ծառս ես եղել գնդակի հետ,
Հրացանի հետ եղել պառկած,
Ուր ոնց կաթիլ

Ձուլվել մասսաներին,
Այդպիսի
Հողով
կերթաս
Դու դեպի կյանք,
Դեպի գործ,
Տոնի,
Մահի դիմաց...»
(Վ. Մայակովսկի. «Լավ է»):

## IV. ՄԵՆՔ ՊԱՇՏՊԱՆ ԷԼ ՈՒՆԵՆՔ, ՊԱՇՏՊԱՆՎԵԼՈՒ ՄԻՋՈՑ ԷԼ ՈՒՆԵՆՔ

*Սովետական պետության համար հեշտ չէր կապիտալիստական շրջապատման մեջ, որտեղ թագավորում է մերկ ուժի սկզբունքը, պաշտպանել անկախ, ինքնուրույն քաղաքականություն վարելու հնարավորությունը:*

*Սովետական քաղաքացին երբեք չի կարող մոռանալ, որ սովետական պետության խաղաղության քաղաքականությունը հնարավոր էր միայն այն պատճառով, որ սովետական կառավարությունը հենվել և*



*հենվում է զինված ժողովրդի հզոր ուժերի վրա, Բանվորա-Գյուղացիական Կարմիր բանակի անխորտակելի ուժերի վրա:*

*Հեշտ չէր ստեղծել այդ Կարմիր բանակն առաջին իմպերիալիստական պատերազմի և քաղաքացիական պատերազմի հետևանքով քայքայված մի երկրում: Բայց ժողովուրդը ոչինչ չխնայեց այդ բանակի ստեղծման համար, ուստի և նա ստեղծեց հզոր մի ուժ, որը երկու տասնամյակների ընթացքում պահպանում է նրա անկախությունն ու խաղաղ աշխատանքի հնարավորությունը: ՍՍՌՄ-ի ժողովուրդները լավ գիտեն և երբեք չեն մոռանա, թե ամբողջ սերունդներ ի՛նչպիսի մեծագույն զոհեր են կրել ՍՍՌՄ-ի ամբողջականությունն ու անկախությունը պաշտպանելու համար: Նրանք չեն մոռացել, թե ինչպես էին ավեր ու անօրինություն անում գերմանական ու այլ ինտերվենտների հրոսակախմբերը, որոնք հոշոտում էին մեր հայրենիքի կենդանի մարմինը:*

*ՍՍՌՄ ժողովուրդների խաղաղ աշխատանքի հնարավորությունն ապահովված էր Կարմիր բանակի հերոսական պայքարով, նրա ահեղ, անխորտակելի ուժով: Հենց այդ ուժն էլ ՍՍՌՄ-ի համար ապա-*

հովեց տևական խաղաղությունը: Այդ ուժը կասեցնում էր իմպերիալիստների ձեռքը, որոնք քանիցս հարձակում են նախապատրաստել ՍՍՌՄ-ի դեմ: Հենց այդ ուժն էր, որ 1939—40 թվականներին հակահարված տվեց ֆիննական սպիտակգվարդիականներին և այդ ուժն էլ հենց կավարտի այդ սպիտակգվարդիականների ջախջախումն այժմ, երբ սպիտակգվարդիականությունը բարձրացրել է իր հանցավոր ձեռքը և գերմանական ֆաշիստների հետ միասին ավազակային հարձակում է գործում Սովետների խաղաղ երկրի վրա: Այդ բանակն ազատագրում բերեց Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի, Բեսսարաբիայի, Լիտվայի, Լատվիայի և Էստոնիայի ժողովուրդների համար: Նա քանիցս ցույց է տվել հերոսության չտեսնված օրինակներ: «Հանուն հայրենիքի, հանուն Ստալինի» կանչով Կարմիր բանակի մարտիկները, հրամանատարներն ու քաղաշխատողները գնում էին ու կռվում մարտի՝ սովետական իշխանության համար, պատվի համար, ազատության համար: Նույն այդ մասսայական հերոսությունը, որը լավ հայտնի է մեր թշնամիներին քաղաքացիական պատե-



րազմի ժամանակներից, այժմ նոր ուժով առաջ կմղի Կարմիր բանակի մարտիկներին, անխորտակելի կդարձնի նրանց մարտական գրոհը:

Ընկեր Ստալինը միշտ սովորեցրել է, որ սովետական ժողովուրդը պետք է լինի մոբիլիզացիոն պատրաստության վիճակում: Պատերազմը մեզ հանկարծակիի չբերեց: Մենք աչալուրջ հետևում ենք, թե ինչ է կատարվում սովետական սահմանների մյուս կողմում, և ՍՍՌՄ-ի Կարմիր բանակը կկատարի իր քաղաքացիական պարտքը:

Եվ մենք գիտենք.

Թշնամին կջախջախվի, հաղթանակը մերը կլինի:

Երբ ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիան ընդունում էր 1941 թվականի բյուջեն և հաստատում էր պաշտպանության համար կատարվող հատկացումները, ամբողջ երկիրը հպարտանում էր, որ ինքը կարող է ապահովել այդպիսի գգալի ծախսեր ՍՍՌՄ-ի ռազմական հզորությունն ամրապնդելու համար:

Սովետական Միության քաղաքացիներն ապացուցեցին, որ իրենք պատրաստ են ա-

մեն բանով օգնելու սովետական պետությանը: Վերջերս ավարտված պետական փոխառության բաժնեգրությունը ցույց տվեց, որ սովետական ժողովուրդը պատրաստ է ամենաջերմ օգնություն ցույց տալու պետությանը նրա հզորությունն ամրապնդելու գործում: Փոխառության գումարը զգալիորեն գերազանցվեց և, չկա որևէ տարակույս, որ ՍՍՌՄ-ի ժողովուրդներն այսուհետև էլ կանեն անհրաժեշտ ամեն բան, որպեսզի Կարմիր բանակը ոչ մի բանի կարիք չզգա իր խնդիրը հաջողությամբ կատարելու գործում: Դրա համար հարկավոր է ամեն բան ի սպաս դնել բանակին—հստակ աշխատանքն ամբողջ արդյունաբերության մեջ, նրա բոլոր ուժերի, հատկապես պաշտպանության կարիքների համար աշխատող արդյունաբերության ուժերի մոբիլիզացիան. հստակ, կանոնավոր աշխատանքը տրանսպորտում, որը հսկայական դեր է խաղում պատերազմի ժամանակ. համերաշխ, կազմակերպված ստախանովյան աշխատանքը կոլխոզային դաշտերում և սովխոզներում. երկրի բոլոր գիտնականների, ինժեներների, տեխնիկների, գրողների, արվեստի



աշխատողների համար, նպատակասլաց աշխատանքը. հաստատակամ և նույնքան նպատակասլաց ուսուցումը դպրոցում, ռազմական գործի գիտելիքների, սանիտարական ծառայության, քիմիական ու հակաօդային պաշտպանության մինիմումի տիրապետումն ամբողջ բնակչության կողմից. ամենախիստ կարգապահությունը. ռևոլյուցիոն բարձր զգաստությունը. ինքնազոհաբերման պատրաստակամությունը: Սովետական հայրենասերի համար կարո՞ղ է արդյոք լինել ավելի բարձր, ավելի կենսական, ավելի սրբազան որևէ մի բան, քան թե իր բոլոր ուժերը, իսկ եթե հարկավոր է՝ նաև կյանքը սովետական հայրենիքի պաշտպանությանը նվիրելը, որպեսզի նա կարողանա Վլ. Մայակովսկու հետ միասին ասել.

«Նրանց հետ,
Ով եղավ,
կառուցման ու վրեժի
Համատարած տենդով
Աստղնի,
փառաբանում եմ
Ես հայրենիքը,
Որը կա,—

Բայց եռակի
Պիտի լինի»:

Սովետական հայրենասերի համար չկա՛ և չի՛ կարող լինել ավելի բարձր որևէ բան, քան հոգատարությունը Կարմիր բանակի նկատմամբ: Կարմիր բանակն՝ ինքը դաստիարակում է սովետական հայրենասիրության զարմանալի հատկությունները. այստեղ դա ենթարկվում է ամենագործունյա, կենդանի ստուգման, այստեղ դաստիարակվում են իսկական սովետական, ռևոլյուցիոն, մարտական կարգապահություն, արիություն, հերոսություն, հնարամտություն, խիզախություն, անվեհերություն, փոխադարձ օգնության զգացմունք, այստեղ կոփվում է սերտորեն միաձուլված մարտական կոլեկտիվ, մեծագույն անձնազոհության պատրաստակամություն: Որովհետև այդ՝ նոր բանակ է, որը պաշտպանում է աշխատավորության շահերը: Այդ բանակը կոփվել է ռևոլյուցիայի բոցերի մեջ, քաղաքացիական պատերազմում: Նրա հեղինակությունը ժողովրդի աչքում անչափ մեծ է, որովհետև նա ժողովրդի միսն ու արյունն է: Ոչ մի տեղ չկա բանակի և նրա խորա-



պես ժողովրդական հրամանատարական կազմի նկատմամբ ժողովրդի ավելի մեծ սեր, քան մեր երկրում: Սովետական արդյունաբերությունն այդ բանակին մատակարարում է ամենակատարելագործված ժամանակակից մարտական տեխնիկա: Այդ արդյունաբերությունը բանակին կտա հաղթանակի համար անհրաժեշտ ամեն բան:

Բայց մենք բոլորս, մեկ մարդու պես, պետք է մեզ զգանք այդ Կարմիր բանակի մարտիկներ: «Մեր ամբողջ ժողովուրդն այժմ պետք է լինի համախմբված ու միասնական՝ ինչպես երբեք: Մեզանից յուրաքանչյուրը պետք է իրենց և ուրիշներից պահանջի կարգապահություն, կազմակերպվածություն, անձնազոհություն, ինչպիսին վայել է իսկական սովետական հայրենասերին, ապահովելու համար Կարմիր բանակի, Նավատորմի ու Ավիացիայի բոլոր կարիքները, ապահովելու համար հաղթանակը թշնամու նկատմամբ»: (Ընկեր Մոլոտովի ռադիոելույթից):

Պատմության նժարի վրա կշռվում է, Եվրոպայի, Ասիայի և այլ երկրների

տասնյակ ժողովուրդների բախտը: Ներկայումս սկսված հայրենական մեծ պատերազմի ելքից է կախված ոչ միայն ՍՍՌՄ-ի ժողովուրդների, այլև մյուս ժողովուրդների բախտը: Պատմական մեծագույն պատասխանատվության գիտակցությամբ, մեզանից յուրաքանչյուրն իր ամբողջ եռանդը, իր կամքը, իր գիտելիքները և, եթե հարկ լինի՝ նաև կյանքը կտա թշնամու նկատմամբ հաղթանակ տանելու համար: Եվ այնքան ավելի շուտ կլինի այդ հաղթանակը, այնքան ավելի լիակատար կլինի այն, որքան ավելի սերտորեն մենք ՍՍՌՄ ժողովուրդների մեծ ընտանիքը կհամախմբենք մեր սովետական կառավարության շուրջը, բոլշևիկների մեր մեծ, պանծալի կոմունիստական պարտիայի շուրջը, նրա իմաստուն առաջնորդի, սովետական կառավարության ղեկավար ընկեր Ստալինի շուրջը:

---



# ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՀԱՐՑԵՐԸ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԾՐՋԱՆՈՒՄ

Գերմանական ֆաշիստ կառավարողները սովետական երկրի վզին, մեր ժողովրդի վզին փաթաթեցին պատերազմը: Գերմանական զորքերը հարձակվեցին մեր հայրենիքի վրա գողի պես՝ անկյունից: Գերմանիայի ֆաշիստական կառավարությունը Սովետական Միությանը ոչ մի պահանջ, պրետենզիա, գանգատ չի ներկայացրել: Սովետական կառավարությունը հավատարիմ մնալով իր հետևողական խաղաղասիրական քաղաքականությանը, ամենայն ճշտությամբ կատարել է Գերմանիայի հետ կնքած պայմանագրով իր վրա վերցրած բոլոր պարտավորությունները: Վարելով այս ավազակային պատերազմը, արյունարբու Հիտլերը, այդ կատաղած մարդագայլը, ողջ ֆաշիստական

ոհմակի հետ միասին փորձում է իր ճանկը գցել Սովետական Միությունն այնպես, ինչպես ստրկացրեց նա ֆրանսիացիներին, չեխերին, լեհերին, սերբերին, այնպես, ինչպես զավթեց Նորվեգիան, Բելգիան, Դանիան, Հոլլանդիան, Հունաստանը, անասելի զրկանքների, տառապանքների մատնելով միլիոնավոր աշխատավորությանը։ Բայց այդ նրանց չի հաջողվի։ Սովետական Միության երկու հարյուր միլիոնանոց բազմազգ ժողովուրդը համակված մի ընդհանուր սրբազան տենչով՝ հայրենիքի պաշտպանության տենչով, երկրի երեսից կջնջի ֆաշիստական բանդիտներին, որպեսզի հաջողությամբ շարունակի սոցիալիստական շինարարությունը, որպեսզի ջախջախելով անարգ թշնամուն, ապահովի մեր ժողովրդի երջանիկ կյանքի հետագա ծաղկումը։ Մեր պանծալի Կարմիր բանակը, ստալինյան բազեները, հերոսների անձնվեր, քաջարի այդ բանակը մեկ անգամ չէ, որ ողջ աշխարհի առաջ ցուցաբերել է իր անսահման ուժը, բարձր ռազմական տեխնիկան, իր հայրենիքի սրբազան սահմանները պաշտպանելու կամքը, հաղթահարելով լպիրշ թշնամուն Խասան լճի մոտ տեղի ունեցած



կատաղի կռիվներում, Խալխին-Գոլի ափերին, Արևմտյան Ուկրաինայի, Արևմտյան Բելոռուսիայի դաշտերում արյունակից մեր եղբայրներին ազատագրելու ժամանակ, մաններհայմյան բանդիտների դեմ կռվի դժվարին ֆրոնտում։ Ամեն տեղ Կարմիր բանակը ցույց է տվել, որ նա ոչ միայն գիտի կռվել, այլև սիրում է կռվել, որ ոչ միայն գիտի և սիրում է կռվել, այլև ունի անխախտ կամք՝ հաղթահարել կռվում։ Այդ կամքը տվել է նրան սովետական ժողովուրդը, Սովետների հզոր երկիրը։ Մենք կհաղթենք։ Սովետական մեր լայնածավալ հայրենիքի բազմամիլիոն ժողովուրդը հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինի հետ է, մեր բոլշևիկյան պարտիայի հետ։ Սակայն այսօր, կռվի պայմաններում, սովետական ամեն մի քաղաքացի՝ բանվոր, կոլտնտեսական, ինտելիգենտ պետք է ամենամեծ կազմակերպվածությամբ ու նվիրվածությամբ ցուցաբերի իրեն հանձնարարած աշխատանքը կատարելու գործում, ամենաբարձր զգոնություն՝ հասարակական սեփականության, արտադրական միջոցների, մթերքների խնայողության գործում, ամենահամառ ու վճռական պայքար մղի կորուստների դեմ արդյունաբերության մեջ, կոլխոզներում ու սովխոզներում։

Այս պայմաններում բերքահավաքի հաջող կազմակերպման գործը մեծ նշանակություն է ստանում։ Բերքի բարձրացման, բերքն անկորուստ հավաքելու, ոչ մի հատիկ, ոչ մի պտուղ չկորցնելու համար մղվող պայքարը՝ հայրենիքի պաշտպանության համար պայքար է նշանակում թիկունքում, արտադրության մեջ։ Պարտիական աշխատողները, ագիտատորները պարտավոր են կազմակերպել այդ պայքարը գյուղում։

Կոլխոզային տնտեսության և ողջ սոցիալիստական հողագործության հետագա վերելքն ապահովող կառավարության ու պարտիայի որոշումները՝ հասարակական հողերը հափշտակումից պահպանելու միջոցառումների, կոլխոզների հասարակական անասնաբուծության զարգացման միջոցառումների, մթերումների և գնումների քաղաքականության փոփոխությունների մասին, մոբիլիզացիայի ենթարկեցին կոլխոզնիկներին՝ բարձր արտադրողականության, հողի ամեն մի հեկտարի ճիշտ և լրիվ օգտագործման համար։ Այդ որոշումները կազմակեր-



պեցին և կազմակերպում են կոլխոզային մասսաներին՝ բերքատվության բարձրացման և անասնապահության զարգացման համար, որի հիման վրա 1940 թ. ՍՍՌՄ-ում կոլխոզները լայնացրին ցանքատարածությունները մինչև 117,6 միլիոն հեկտար, 1939 թ. 114,6 միլիոն հեկտարի փոխարեն։ Ցանքատարածությունների աճի հետ միասին, աճել է հողագործության կուլտուրան։ Մեր կոլխոզային դաշտերում այժմ մեծ մասշտաբներով գործադրվում են առաջավոր ագրոտեխնիկայի միջոցառումները, ինչպես օրինակ՝ կարտոֆելի ամառային տնկումը՝ 132,000 հեկտարի վրա, ցանքը՝ յարովիզացիայի ենթարկված սերմերով՝ 113,1 միլիոն հեկտարի վրա։ 23,200 կոլխոզներ իրենց դաշտերում անց են կացրել ճիշտ ցանքաշրջանառություն։ Այս միջոցառումները 1940 թվին մեր երկրի համար ապահովեցին 7,3 միլիարդ փութ հացահատիկի արտադրությունը, տեխնիկական կուլտուրաների, բանջարեղենի և այլ կուլտուրաների ավելի բարձր բերքատվությունը։

Մեր ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղի նոր, ավելի մեծ հաջողությունների խոշոր խթան հանդիսացավ Հայկական ՍՍՌ-ում

գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու համար կոլխոզնիկներին լրացուցիչ վարձատրություն տալու մասին պարտիայի և կառավարության մարտի 13-ի որոշումը: Այդ որոշումն առաջ բերեց կոլխոզային մասսաների բուռն արտադրական խանդավառությունը, որովհետև նրա մեջ փայլուն կերպով արտահայտված է բոլշևիկյան պարտիայի և սովետական կառավարության ստալինյան հոգատարությունը կոլխոզների և կոլխոզնիկների նկատմամբ: Որովհետև այդ որոշումը վերացնում է կոլխոզային աշխատանքի վարձատրության մեջ մինչ այդ գոյություն ունեցող հավասարեցումը, խթանում է բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացումը: Մարտի 13-ի որոշման մեջ հաշտ կերպով զուգակցված են կոլխոզի ընդհանուր և կոլխոզնիկի անհատական շահերը, որն ապահովում է նրանց ունևորության հետագա աճը: Կոնկրետ կերպով ինչո՞վ է արտահայտվում այդ որոշման իմաստն ամեն մի առաջավոր կոլտնտեսականի համար:

Թալինի շրջանի Ղարաղոյմազ գյուղի կոլխոզի Օհան Գրիգորյանի բրիգադան



1940 թվին մեկ հեկտարից ստացել է 15,5 ցենտներ հացահատիկ, սահմանված 14 ցենտների դիմաց, 64 հեկտար ցանքսից բրիգադան ստացել է 96 ցենտներ նորմայից ավելի հացահատիկ: Եթե այդ բրիգադան այս տարի էլ ստանա այնքան բերք, ինչքան անցյալ տարի կամ եթե մարտի 13-ի որոշումը լիներ 1940 թվին, այն ժամանակ աշխօրերի միջին արժեքից դուրս բրիգադան կստանա ավելի ստացած հացահատիկի մեկ երրորդը, այսինքն՝ 32 ցենտներ հացահատիկ, որպես լրացուցիչ վարձատրություն:

Ազիզբեկովի ռայոնում Ալադեկի կոլխոզի վարչությունն անասնապահ կովկիթներ Արփենիկ Հարությունյանին, Արմենուհի Գևորգյանին և Եղիսաբեթ Հովսեփյանին որպես լրացուցիչ վարձատրություն, արդեն վճարել է 75-ական լիտր կաթ:

Օրինակներ այն մասին, թե ինչպե՞ս են այդ որոշման մեջ արտահայտվում առաջավոր կոլխոզնիկի շահերը, որն ուզում է աշխատել նվիրված և բարեխղճորեն, կարելի է շատ բերել: Բերված օրինակներն էլ բավական են պատկերացնելու համար, թե ինչպիսի՞ հսկայական նշանակություն ունի այդ որոշումն արտադրողականության

բարձրացման, գյուղատնտեսական միջոցառումների առատության համար։

Մարտի 13-ի որոշման մասսայականացումը, նրա բոլոր սկզբունքներն ամենայն մանրամասնությամբ ամեն մի կոլխոզնիկի խորը գիտակցությանը հասցնելու գործը կարևոր խնդիր է հանդիսանում այժմ պարտիական կազմակերպությունների համար։ Որոշման հրապարակման օրից ի վեր, 10.000-ից ավելի ագիտատոր սկսեցին մասսայականացնել այն։ Մենք ունենք հարյուրավոր առաջավոր ագիտատորների աշխատանքի դրական փորձը, որոնք ոչ միայն մասսայականացրել, այլև օգնել են կոլխոզներին՝ այդ որոշման կատարման համար։

Բերքատվության բարձրացման պայքարի դրական արդյունքներն այս տարի առաջին հերթին արտահայտվեցին գարնան գյուղատնտեսական աշխատանքների ընթացքում։ Չնայած կլիմայական որոշ աննպաստ պայմաններին, ռեսպուբլիկայում գարնանացանը կատարվեց հիմնականում մայիսի 25-ին, կամ՝ 15 օր ավելի շուտ, քան անցյալ տարի։ Հացահատիկային կուլտուրաների ցանքսը կատարված է 100,3 տոկոսով։ Լրիվ կերպով



կատարվել են բամբակի և մի շարք այլ տեխնիկական կուլտուրաների ցանքսերը։

Ստեփանավանի, Դուզքենդի, Միկոյանի, Մեղրու, Սիսիանի և ուրիշ շրջանները, գարնանացանը կատարեցին ավելի կարճ ժամանակաընթացքում։ Շաքարի ճակնդեղի ցանքսը, որն անցած տարիներում ուշանում էր, մի հանգամանք, որը բացասաբար էր անդրադառնում բերքատվության վրա, այս տարի կատարված է 15 օրում, կամ մեկ և կես ամիս շուտ, քան անցյալ տարի։ Գերակատարված են կարտոֆելի ցանքսի, խաղողի և պտղատու այգիների տնկման պլանները։ Զգալի կերպով բարելավեցին իրենց աշխատանքը մեքենատրակտորային կայանները. դեռ առ մեկը հունիսի, գարնան տրակտորային վարի պլանը կատարված էր 175,8 տոկոսով, անցյալ տարվա 106,5 տոկոսի դիմաց։ Այս հաջողությունների մեջ բոլշևիկյան ագիտատորների տարած աշխատանքը կատարել է իր պատվավոր դերը։ Սակայն, բարձր բերք ստանալու համար բավական չէ միայն ցանքսը կատարել ժամանակին և որակով։ Անհրաժեշտ է ճիշտ կազմակերպել ցանքսի մշակումը, խնամքը, լավ պատրաստվել և անկորուստ կատարել

բերքահավաքը, օգտագործելով կոլխոզի բոլոր հնարավորությունները՝ թե մարդկային ուժի և թե տեխնիկական հնարավորությունների տեսակետից, քանի որ բերքահավաքի շրջանում ոչ թե օրերը, այլ ժամերն անգամ շատ բան են որոշում։ Այս հարցերի շուրջն է, որ այժմ անհրաժեշտ է ուղղել մեր ագիտատորների աշխատանքը գյուղում։

Հիմնական հարցը, որ դրվում է հիմա մեր առաջ՝ այդ այն է — ոչ միայն ծանոթացնել աշխատավորությանը որոշումների հետ, ներկա իրադրության հետ երկրի ներսում և արտաքին աշխարհում, այլ կազմակերպել նրանց՝ որոշման կենսագործման համար, բերքահավաքն ամենակարճ ժամանակում և անկորուստ կատարելու համար։

Այս օրերին, երբ մեր երկիրը գյուղատնտեսության մեջ աշխատող ձեռքի խիստ կարիք ունի, երբ հարցը դրված է այնպես, որ անկախ այն բանից, թե ինչպիսի՞ մարդկային ուժեր ունի կոլխոզը, բերքահավաքը պետք է կատարել լրիվ և անկորուստ, գյուղատնտեսական գործիքների լրիվ ու ճիշտ օգտագործման հարցը հատուկ նշանակություն է ստանում, ամեն մի կոլտն-



տեսականի համար պարզ պետք է լինի այս հանգամանքը, իսկ ագիտատորները պետք է արթուն կերպով հետևեն, թե ինչպե՞ս են օգտագործվում գյուղատնտեսական մեքենաները՝ թե հասարակ, թե բարդ։

Բանջարեղենի ցանքսի պլանների կատարումը շատ կարևոր է։ Բանջարեղեն հարկավոր է կոնսերվի արդյունաբերության, բանակի, քաղաքի ազգաբնակչության համար։ Ըմբռնե՞լ են արդյոք այդ անհրաժեշտության իմաստը առանձին ռայոնների բանջարաբուծությամբ զբաղվող կոլխոզները։ Փաստերը ցույց են տալիս, որ ոչ։ Այս կուլտուրայի նշանակությունը, նրա անհրաժեշտության օգտին ագիտացիա կազմակերպելն ընկնում է մեր ագիտատորների վրա, որոնք, ինչպես ցույց են տալիս թվերը, չեն կատարել այդ։

Այժմ մեր առաջ դրված է արտադրական ագիտացիայի կազմակերպման հարցը։ Եթե մենք ցանկանում ենք, որ ագիտատորը կազմակերպի մասսաներին՝ բերքատվության բարձրացման համար, ապա նա պետք է հասկանա կոլխոզի արտադրության հարցերը, ծանոթ լինի ագրոտեխնիկայի կա-

նոմներին, այլապես հիմնական թերությունների շուրջը քննել կոլխոզնիկների ուշադրությունը և կազմակերպել նրանց վերացման գործը, ագիտատորը չի կարող: Այդպիսի աշխատանքի փորձ մենք ունենք Բերիայի անվան, Ազիզբեկովի և այլ ռայոններում, երբ ագրոնոմները կազմակերպում են զրույցներ՝ բարձր բերք ստանալու միջոցառումների մասին, փոխանակում են առաջավորների փորձը: Սակայն, արտադրական ագիտացիան այս օրերին, այդ ուղղությամբ չէ միայն, որ պետք է գնա: Մեր ագիտատորներին, հատկապես մասնագետ ագիտատորներին բաժին է ընկնում կատարել շատ հրատապ մի գործ. կազմակերպել բերքահավաքը և տեխնիկական կուլտուրաների մշակությունն այնպես, որ այն հնարավոր լինի կատարել արագ, տնտեսելով մարդկային ուժը, այնպես կազմակերպել բերքի մշակումը, որպեսզի ոչ մի հատիկ չկորցնենք:

Գյուղատնտեսության մեջ սոցիալիզմի ամենացայտուն հաղթանակներից մեկն այդ բարձր արտադրողականության ստեղծումն է կոլխոզային արտադրության մեջ: Դեռ անցյալ տարվա հաշիվներով Միության մեջ



մեկ ցենտներ հացահատիկի արտադրության վրա ծախսվում էր մեկ մարդ-օր, այն ժամանակ, երբ անհատական գյուղատնտեսությունը ծախսում էր 3,2 մարդ-օր, մեկ հեկտար ցանքսի մշակման վրա կոլխոզային արտադրության մեջ ծախսվում է 10,5 մարդ-օր, այն ժամանակ, երբ անհատական գյուղատնտեսությունը ծախսում է 21 մարդ-օր:

Աշխատանքի արտադրողականությունը կոլխոզային գյուղում ընդհանրապես, նախկինի հետ համեմատած, աճել է 3-ից ավելի անգամ: Արտադրողականության այս հսկայական աճը ձեռք է բերվել կոլխոզային աշխատավորության ժրաջան աշխատանքով, պարտիայի հոգատարության ներքո: Սակայն աշխատանքի արտադրողականության անընդհատ աճը կարելի է ապահովել մեծ մասամբ ամուր և կայուն դիսցիպլինայի պայմաններում: Այդ տեսակետից ծույլերի, ուրիշի աշխատանքով ապրել ցանկացող կոլտնտեսականների դեմ, կոլխոզի արտադրական դիսցիպլինան խախտողների դեմ պայքար կազմակերպելու հարցը, ագիտացիոն աշխատանքների հիմնական նպատակներից մեկն է, որովհետև գյուղատն-

տնտեսական արտելի ստալինյան կանոնադրության մեջ նշված լոզունգի նկատմամբ կազմակերպչական միջոցառումների կիրառումից բացի, մեզ՝ պարտաշխատողներիս վրա ընկնում է նաև կոլխոզնիկների կոմունիստական դաստիարակության գործը, որում մեծ անելիքներ ունեն ագիտատորները։

Մեծ խստություն և անհաշտ վերաբերմունք պետք է ցուցաբերել այն կոլխոզնիկների, ՄՏԿ աշխատողների նկատմամբ, որոնք ծուլություն են հայտնաբերում բերքահավաքի ընթացքում հատկապես։ Եվ իրոք, ամբողջ տարին կոլեկտիվը համառ կերպով աշխատում է բարձր բերք ստանալու համար և բերքահավաքի ժամանակ, երբ ոչ միայն մեկ օրը, այլև ամեն մեկ ժամը խոշոր դեր է խաղում, գտնվում են մարդիկ, որոնք անհատական նեղ շահերից ելնելով կամ լոդրության սովորած լինելու հետևանքով, խափանում են բերքահավաքի ռիթմիկ, լարված աշխատանքը, հսկայական վնասներ հասցնելով և կոլտնտեսությանը և պետությանը։

Կանանց ուժի օգտագործման հարցը գյուղատնտեսության մեջ այժմ հատուկ նշանակություն է ստանում։ Քաջ գիտակցե-



լով այդ մասին, մեր երկրի հայրենասեր կանայք կազմակերպել են մեծ շարժում դեպի արտադրությունը, դեպի կոլխոզային դաշտերը՝ փոխարինելու համար իրենց ամուսիններին, եղբայրներին, որոնք մեկնել են կռվի դաշտ՝ պաշտպանելու համար մեր հայրենիքի սրբազան սահմանները, պաշտպանելու համար սովետական ժողովրդի երջանիկ կյանքը անարգ ֆաշիստներից. շատ կանայք իրենց ձեռքն են վերցրել տրակտորի ու կոմբայնի ղեկը, վարում են բերքահավաքող մեքենաները, անցել են բրիգադների, կոլխոզների ղեկավարման գործին։ Կանայք Հոկտեմբերյանի շրջանում առաջին անգամ սկսել են աշխատեցնել տրակտորներ ու կոմբայններ, փոխարինելով տղամարդկանց։ Սպիտակի շրջանում կանայք փոխարինում են իրենց ամուսիններին և եղբայրներին, այդ թվում՝ Մարուսյա Բաղրամյանը ղեկավարում է իր ամուսնու տրակտորային բրիգադան, Համամլուի, Ղարալայի, Գյողակլուի, Նալբանդի կոլխոզներում նույնպես կանայք փոխարինել են բանակ գնացող տրակտորիստներին։ Անհրաժեշտ է այժմ գլխավորել սովետական հայրենասեր կանանց այդ շարժումը,

կազմակերպել նրանց՝ տեխնիկային արագ տիրապետելու համար, նպատակահարմար կերպով օգտագործելով կանանց ուժն արտադրության մեջ այնպես, որպեսզի նորմալ կերպով աշխատեն ՄՏ կայանները, կարճ ժամանակում և անկորուստ հավաքվի բերքը։

Այս խնդրի արագ և ճիշտ կերպով իրականացման հետ սերտ կապ ունի գյուղում մսուրների ու մանկական հրապարակների կազմակերպումը։ Պարտիական կազմակերպությունները, ագիտկոլեկտիվներն իրենց աշխատանքը՝ կանանց արտադրության մեջ ներգրավելու գործում պետք է տանեն և այս ուղղությամբ, հաշվի առնեն պահանջը, լայնացնեն մանկահրապարակների և մանկամսուրների ցանցը, ընդլայնելով եղածները և կազմակերպելով նոր հրապարակներ, այնտեղ, որտեղ չկան այդպիսիք։ Մանկամսուրների և հրապարակների աշխատանքներում լայն կերպով պետք է ներգրավել մեծահասակ պիոներներին, աշակերտուհիներին, այն հաշվով, որ նրանք այդ կերպ նույնպես մասնակցած լինեն կոլխոզային արտադրության աշխատանքներին։

Ձգտելով բերքի բարձրացմանը, ագրո-



տեխնիկական կանոնների լրիվ ու ճիշտ իրագործմանը, մեզ մոտ աշխատանքի ձև է դարձել առաջավորների փորձի օգտագործումը, լավ փորձի, դրական աշխատանքի օրինակի փոխանակման կազմակերպումը։ Բայց դեռ կան ոչ քիչ թվով ագիտատորներ, որոնք չեն սովորել ագիտացիան կազմակերպել օրինակի ուժով, պատկերել առաջավորների փորձը։ Մինչդեռ օրինակի ուժը մեծ է։

Լենինը լավ օրինակի օգտագործման մասին ասել է. «Օրինակի ուժը, որը չէր կարող իրեն հանդես բերել կապիտալիստական հասարակարգում, հսկայական նշանակություն կստանա այն հասարակարգում, որը վերացրել է ֆաբրիկաների և հողի մասնավոր սեփականությունը, ոչ միայն նրա համար, որ այստեղ կհետևեն լավ օրինակին, այլև նրա համար, որ արտադրության կազմակերպման լավ օրինակը կուղեկցի աշխատանքի անխուսափելի հեշտացումով և սպառման գումարների մեծացումով նրանց համար, ով անց է կացրել այդ լավ կազմակերպումը»։

Լավ օրինակին հետևելը, աշխատանքն առաջավորների օրինակով կազմակերպելը մեր ագիտացիայի հիմնական խնդիրներից է։

Այդպիսի ագիտացիա կազմակերպելու համար անհրաժեշտ է, որպեսզի ամեն մի ագիտատոր և հատկապես ագիտացիոն աշխատանքը կազմակերպող, ագիտկոլեկտիվի ղեկավար, ռայոնական կոմիտեի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի աշխատող լավ իմանա իր շրջանի կոլտնտեսական-արտադրական հարցերը, տեղյակ լինի գյուղատնտեսական աշխատանքների ընթացքին, ուսումնասիրի ռայոնի էկոնոմիկան։

Ամեն մի ագիտատոր պետք է գիտենա առաջավորներին, ուսումնասիրի առաջավոր կոմբայնավարի, տրակտորիստի աշխատանքի ձևերն ու արդյունքները նրա համար, որպեսզի այդ դրական փորձի մասին զրույցներ կազմակերպի, որպեսզի սովորեցնի բոլորին աշխատել առաջավորների օրինակով։

«Պրավդա»-ն — «Մասսայական աշխատանքը գյուղում» — մայիսի 14-ի առաջնորդողում գրում է. «Կոմունիստն առաջամարտիկ է, նա պարտավոր է ամենուրեք ամրացնել կապը մասսաների հետ, նրանց բացատրել պարտիայի քաղաքականության ու որոշումների իմաստը, երկրում և արտասահմանում տեղի ունեցող իրադարձու-



թյունները։ Բոլշևիկը չի կարող հանդուրժել թերությունները, բոլշևիկյան ագիտացիան հարձակողական ագիտացիա է։ Ագիտացիա անել — սովորեցնում է ընկեր Ստալինը, — չի նշանակում միայն հաղորդել, այլ մերկացնել»։

Բերքահավաքի հետ զուգընթաց՝ պետք է տեղի ունենա պետական պարտավորությունների հանձնումը։ Ամեն մի ագիտատորի պարտականությունն է կազմակերպել ագիտացիա, որպեսզի պետական պարտավորությունները կատարվեն ժամանակին։ Այս հարցում բոլոր կոլխոզները պետք է հետևեն Աշտարակի շրջանի Ա. Միկոյանի անվան կոլխոզի օրինակին։ Այդ կոլխոզն առաջին կալից հանձնեց պետությանը հացահատիկ և լրիվ կերպով կատարեց պետական պարտավորությունը։ Նույնպես են վարվել նաև Հոկտեմբերյանի շրջանի մի շարք կոլխոզներ։

Պետության հանդեպ պարտավորությունների ժամանակին կատարումն ավելի քան կարևոր հարց է։ Այդ նպատակով պետք է լրիվ կերպով օգտագործել կոլխոզների քաշող ուժը և այլ փոխադրական միջոցները։

Կոլխոզային ողջ մասսաներն ամենա-

Այդպիսի ագիտացիա կազմակերպելու համար անհրաժեշտ է, որպեսզի ամեն մի ագիտատոր և հատկապես ագիտացիոն աշխատանքը կազմակերպող, ագիտկոլեկտիվի ղեկավար, ռայոնական կոմիտեի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի աշխատող լավ իմանա իր շրջանի կոլտնտեսական-արտադրական հարցերը, տեղյակ լինի գյուղատնտեսական աշխատանքների ընթացքին, ուսումնասիրի ռայոնի էկոնոմիկան։

Ամեն մի ագիտատոր պետք է գիտենա առաջավորներին, ուսումնասիրի առաջավոր կոմբայնավարի, տրակտորիստի աշխատանքի ձևերն ու արդյունքները նրա համար, որպեսզի այդ դրական փորձի մասին զրույցներ կազմակերպի, որպեսզի սովորեցնի բոլորին աշխատել առաջավորների օրինակով։

«Պրավդա»-ն — «Մասսայական աշխատանքը գյուղում» — մայիսի 14-ի առաջնորդողում գրում է. «Կոմունիստն առաջամարտիկ է, նա պարտավոր է ամենուրեք ամրացնել կապը մասսաների հետ, նրանց բացատրել պարտիայի քաղաքականության ու որոշումների իմաստը, երկրում և արտասահմանում տեղի ունեցող իրադարձու-



թյունները։ Բոլշևիկը չի կարող հանդուրժել թերությունները, բոլշևիկյան ագիտացիան հարձակողական ագիտացիա է։ Ագիտացիա մղել — սովորեցնում է ընկեր Ստալինը, — չի նշանակում միայն հաղորդել, այլ մերկացնել»։

Բերքահավաքի հետ զուգընթաց՝ պետք է տեղի ունենա պետական պարտավորությունների հանձնումը։ Ամեն մի ագիտատորի պարտականությունն է կազմակերպել ագիտացիա, որպեսզի պետական պարտավորությունները կատարվեն ժամանակին։ Այս հարցում բոլոր կոլխոզները պետք է հետևեն Աշտարակի շրջանի Ա. Միկոյանի անվան կոլխոզի օրինակին։ Այդ կոլխոզն առաջին կալից հանձնեց պետությանը հացահատիկ և լրիվ կերպով կատարեց պետական պարտավորությունը։ Նույնպես են վարվել նաև Հոկտեմբերյանի շրջանի մի շարք կոլխոզներ։

Պետության հանդեպ պարտավորությունների ժամանակին կատարումն ավելի քան կարևոր հարց է, Այդ նպատակով պետք է լրիվ կերպով օգտագործել կոլխոզների քաշող ուժը և այլ փոխադրական միջոցները։

Կոլխոզային ողջ մասսաներն ամենա-

մեծ լարվածությամբ ու կարգապահությամբ կհավաքեն սոցիալիստական դաշտերի բերքն արագ ու անկորուստ, կմշակեն տեխնիկական կուլտուրաները, որպեսզի ավելի բարձր բերք ստանան։ Այդպես է հարկավոր աշխատել՝ մեր հայրենիքի պաշտպանության համար, նրա սրբազան սահմաններն էլ ավելի անխախտ դարձնելու համար, սովետական երկրի դեմ ավազակային պատերազմ սկսող գերմանական ֆաշիզմի խոզի նենգ դունչը ջախջախելու համար։

Գրոհի է գնում սովետական ողջ ժողովուրդը։ Նրա քաջարի զավակները Կարմիր Բանակի մարտական շարքերում, արտադրության մեջ, գյուղատնտեսության մեջ՝ պայքարում են հայրենիքի պաշտպանության համար։

Մեր վեհ հայրենիքի միլիոնավոր, հարյուր միլիոնավոր մարդկանց, սովետական բոլոր քաղաքացիների, ծեր թե երիտասարդ, սրտերը մեկ տենչով են բաբախում՝ պաշտպանել հայրենիքը, հաղթել թշնամուն։ Եվ մենք կհաղթենք, որովհետև մեր գործն արդարացի է։

---

Ի տ. պատասխանատու խմբագրի՝
Խ. Ս. ԻՍԿԱՆԴԱՐՅԱՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

---

ՎՖ 6034, *Պատվեր՝* № 639, *Տիրաժ* 10,000
*Ստորագրված է տպագրության* 30/VI 1941 *թ.*
*Տպագրական* 2½ *մամուլ, մեկ մամուլում* 40.000 *տառանիշ*

Հայկական ՍՍՌ ժողկոմսովետին կից գրքերի և ամսագրերի տպարան, Երևան.